Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 7

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ—1936

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 7



ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն — կու. Հայաստանի
ՅԵՐԵՎԱՆ — 1936

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագիր՝ Գինո Շաղզամյան
Պատ. քարտուղար՝ Գ. Հարությունյան
Սրբ. Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատարակություն № 3, պատվեր № 1553
Գլավլիտի լիազոր՝ № 2236
Տիրաժ 10.000.
Պետհրատի, տպարան, Երևան



# ԱՋ ԹԱՓԹՓՈՒԿՆԵՐԸ— ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՌԵՍՏԱՎՐԱՑԻԱՅԻ ՊԱՇՏՊԱՆՆԵՐ

## 1.

Տրոցկիստական — զինովյևական բանդիտների դավաճանությունը և դիվերսիաների ու տեռորի զազրելի նախապատրաստման հետագա մերկացումները պայծառ լույս սփռեցին սոցիալիզմի բոլոր թշնամիների քայքայիչ աշխատանքի վրա, թշնամիներ, վորոնք տրոցկիստների և զինովյևականների հետ միասին տարիներ շարունակ պայքար են մղել խորհրդային ժողովրդի դեմ:

Խորհուրդների Համամիութենական Ար—

տակարգ 8-րդ համագումարում իր արտասանած ճառի մեջ, ընկեր Մոլոտովը, նշավակելով տրոցկիստական-զինովյևական արկածներին, ասաց՝ «Հայտնի յե, վոր նրանք ձայնակիցներ և գործակիցներ ունեն նաև աջ թափթփուկներից»:

Միանգամայն որինական ցանկություն ե՝ ծանոթանալ այն պայքարի պատմությանը, վոր մղել ե Լենինի-Ստալինի կուսակցությունն աջ թափթփուկների և նրանց ռեստավրատորային ծրագրի դեմ:

Դեռ 1925 թվականի սկզբներին, ընկեր Ստալինի նախաձեռնությամբ, կուսակցության Կենտրոնական Կոմիտեն դատապարտեց Բուխարինի նետած «Հարստացեք» լոզունգը, վորը պաշտպանվում եր այն ժամանակ «Կոմսոմոլսկայա Պրավդա»-յում: Դա, ինչպես ասում ե ընկեր Ստալինը, «բուն եյության կապիտալիզմը վերականգնելու կոչ» եր*): Հենց նույն ժամանակ՝ 1925 թվականին, կուսակցության 14-րդ համագումարում, ընկեր Ստալինը դիմակազերծ արեց տրոցկիզմի հետ միասին նաև այն թեքումը, վորն ե՝

*) Ի. ՍՏԱԼԻՆ: «Լենինիզմի հարցերը»:



«նսեմացնել կուլակի և ընդհանրապես կապիտալիստական տարրերի դերը գյուղում, կոծկել կուլակային վտանգը»*):

Աջերը հանդես յեկան մեր յերկրում սոցիալիզմը կառուցելու դեմ այն ժամանակ, յերբ Խորհրդային Միության աշխատավորները, Կոմունիստական Կուսակցության ղեկավարությամբ, Լենինի գործը շարունակող իրենց սիրելի առաջնորդ ընկեր Ստալինի գլխավորությամբ, ընդհուպ մոտեցան ամբողջ ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման:

«Իսկ ի՞նչ ե ներկայացնում ժողովրդական տնտեսության վերակառուցումը սոցիալիզմի բազայի վրա—ասում եր ընկեր Ստալինը,—դա ներկայացնում ե սոցիալիզմի արշավն ամբողջ ճակատով ժողովրդական տնտեսության կապիտալիստական տարրերի դեմ»**):

Սոցիալիզմի արշավի ստալինյան պլանը

*) ՀամԿ(բ)Կ-ի 14-րդ համագումարի սղագիր հաշվետվությունը (ռուսերեն), 1926 թ., եջ 47:

**) Ի. ՍՏԱԼԻՆ: «Լենինիզմի հարցերը»:

կատաղի դիմադրության հանդիպեց յերկրի դասակարգային թշնամիների՝ բոլոր կապիտալիստական տարրերի կողմից։ Այդ թշնամիներն իրենց համար հավատարիմ գործակալներ գտան կուսակցության ներսում ինչպես հանձինս տրոցկիստների-զինովևականների, նույնպես և աջ օպորտունիստների։

1928 թվականին, յերբ կուսակցությունը, ջախջախելով տրոցկիստական-զինովևական հակահեղափոխությունը, հաջողությամբ վերացրեց հացի կուլակային սաբոտաժը և վոչնչացրեց վնասարարների ավերիչ կազմակերպություններն արդյունաբերության մեջ, աջ օպորտունիստները, գլխավորված Բուխարինի, Ռիկովի, Տոմսկու, Ուգլանովի կողմից, կատաղի պայքար սկսեցին կուսակցության գլխավոր գծի դեմ։ Կուլակային շաղակրատություններ գործի դնելով գյուղատնտեսության կարծեցյալ «անկման» և միջակի հետ դաշինքի «խզվելու» մասին, խուճապ սերմանելով աշխատավորների մեջ, աջերը չարանենգաբեն զրպարտում եյին կուսակցությանը և ամեն կերպ վարկաբեկելով նրա քաղաքականությունը՝ պահանջում եյին հրա-



ժարվել սոցիալիստական արշավից, կռարձում եյին դեպի հետ, դեպի կապիտալիզմ դարձնել յերկիրը։

Նրանք պահանջում եյին կճկել արդյունաբերական շինարարությունը՝ առաջին հերթին ծանր ինդուստրիայի շինարարությունը և դադարեցնել կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների շինարարությունը, «հանդիստ զարգանալու» հնարավորություն տալով կուլակությանը։

Հանդես գալով սոցիալիստական ինդուստրիայի և կոլեկտիվացման քաղաքականության դեմ, աջերն ըստ եյության հրաժարվում եյին մեր յերկրում սոցիալիզմ կառուցելուց, բռնել եյին կապիտուլյացիայի ուղին, կապիտալիզմի վերականգնման ուղին։

Վճռական դիմադրության հանդիպելով ընկեր Ստալինի, կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի և բոլոր կուսակցական կազմակերպությունների կողմից, աջերն ամենասուր ֆրակցիոն պայքար սկսեցին կուսակցության դեմ։

Բուխարինը հավաքում եր Կոմինտերնում աջ օպորտունիստական տարրերին։ Կուսակցության դեմ պայքար մղելու հա-

մար նա օգտագործում էր նաև իր մի քանի աշակերտներին՝ բուրժուական սրիկաներին, այսպես կոչված «երիտասարդների բուխարինյան դպրոցը»՝ Սլեպկովին, Մարեցկուն, Զայցևին, Այխենվալդին: Ռիկովն աջ օպորտունիստներ էր դաստիարակում խորհրդային ապարատում, Տոմսկին Փրակցիոն պայքար էր մղում արհմիություններում; Ուգլանովն իր արբանյակների՝ Ռյուտինի, Կոտովի, Կուլիկովի հետ միասին խմբավորում էր աջ օպորտունիստներին Մոսկվայի կուսակցական կազմակերպության մեջ:

Աջ կապիտուլյանտները, սոցիալիստական արշավի դեմ իրենց մղած պայքարի հենց սկզբից, ստոր անսկզբունք բլոկ կազմակերպեցին տրոցկիստական — զինովևյան հակահեղափոխականների հետ: Կապիտուլյացիայի միասնական պլատֆորմը, կապիտալիզմի վերականգնման պլատֆորմը հիմք ծառայեց կուսակցության բոլոր թշնամիների միացմանը: 1928 թվականի ամառը Բուխարինը, հանրածանոթ երկերեսանի Սոկոլնիկովի միջոցով գաղտնի բանակցություններ էր վարում տրոցկիստական զինովևյան շայկայի ներկայումս գնդա-



կահարված պարագլուխ Կամենևի հետ: Նրանց միացնում էր ընդհանուր նպատակը — կերտել կուսակցության թշնամիների՝ աջերի և տրոցկիստ — զինովևյանների բլոկ՝ ԽՍՀՄ-ում կապիտալիզմը վերականգնելու ընդհանուր պլատֆորմի վրա:

Միևնույն ժամանակ աջ օպոզիցիայի պարագլուխներն ուրիշի աչքին թոզ փչելու համար քվե տվին տնտեսական դրության և հացամթերման քաղաքականության մասին Կենտկոմի ընդունած բանաձևին:

Աջերի դավաճան գործունեությունը և ռեստավրատորային պլատֆորմը մերկացրեց ընկեր Ստալինը:

Կոմինտերնի 6-րդ կոնգրեսն ընդունեց միջազգային դրության ստալինյան գնահատականը, որը վանում է Բուխարինի օպորտունիստական թեզերը: Կուսակցությունը, ընկեր Ստալինի ղեկավարությամբ, ջախջախեց այն աջերին, որոնք նստել էին արհմիություններում, Տոմսկու թևի տակ, որոնք խեղդում էին մասսաների ակտիվությունը: Չնայած աջերի, մանավանդ Տոմսկու, կատաղի դիմադրության, ՀԱՄԿԽ-ի նախագահության կազմի մեջ մտցվեց ընկեր Լ. Մ. Կագանո-

վերը, և արհմիություններում օպորտունիզմի դեմ նրա մղած անհաշտ պայքարը հսկայական նշանակություն ունեցավ սոցիալիստական արշավի հետագա հաջողության համար:

Ընկեր Ստալինի ղեկավարությամբ դիմակազերծ արվեց աջերի հակակուսակցական գործունեությունը նաև Մոսկվայի կուսակցական կազմակերպության մեջ: Մոսկվայի բոլշևիկները դուրս վռնդեցին Ուգլանովին, Կոտովին, Կուլիկովին և նրանց արբանյակներին:

Համ. Կ(բ)Կ Կենտկոմի 1928 թ. նոյեմբերի պլենումում ընկեր Ստալինը բացահայտեց կուսակցության մեջ գտնվող կուլակային գործակալության՝ աջ կապիտուլյանտների եյությունը և ցույց տվեց, թե ինչու աջ վտանգն այն ժամանակ գլխավոր վտանգն եր հանդիսանում:

2.

Կապիտալիզմի ռեստավրացիայի աջ իդեոլոգները 1929 թվականին ավելի մեծ մոլեգնությամբ գրոհ տվին ստալինյան սոցիալիստական արշավի դեմ:



Դա պատահականություն չեր: 1929 թվականը պատմության մեջ մտավ որպես մեծ բեկման տարի՝ Խորհրդային Միության աշխատավորներն ընկեր Ստալինի առաջնորդությամբ, ամբողջ ճակատով ծավալուն սոցիալիզմի արշավում ձեռք բերին մի շարք վճռական հաջողություններ: Այդ իսկ պատճառով թշնամին ե՛լ ավելի կատաղի թափով հանդես յեկավ սոցիալիզմի դեմ:

Կապիտալիզմի ռեստավրացիայի աջ պաշտպանները՝ կուլակային գործակալները կատաղի փորձ եյին անում կանգնեցնել սոցիալիզմի հաղթական յերթը, վոր ընթանում եր ստալինյան ուղիով:

1929 թվականի սկիզբներին թխված Ֆրակցիոն պլատֆորմում Բուխարինը, Ռիկովը, Տոմսկին ամենասուր, զրպարտիչ մեղադրանքներով հարձակվեցին կուսակցության գլխավոր գծի և Կենտրոնական Կոմիտեյի վրա:

Աջ ռեստավրատորները տրոցկիստական զրպարտության զինանոցից փոխ վերցրին նաև այն պնդումը, թե կուսակցության մեջ բյուրոկրատիզմ է պատվաստվում, թե չկա ներկուսակցական դեմոկրատիա:

Նրանք պայքարում էին հացամթերման ժամանակ կուլակների դեմ ուղղված արտակարգ միջոցները վերացնելու համար և պահանջում էին սոցիալիստական ինդուստրացման համար անհրաժեշտ մեքենաների փոխարեն հաց ներմուծել արտասահմանից, առաջարկում էին լիակատար ազատություն տալ կուլակային արտադրությանը և հացի կուլակային սպեկուլյացիային: Նրանք պահանջում էին թուլացնել սոցիալիստական ինդուստրացման տեմպը և հրաժարվել հնգամյակից:

Կուլակը մարտնչում էր հօգուտ իր տնտեսության «խաղաղ» զարգացման, հօգուտ կապիտալիստական կուտակման ազատության: Նրան օգնության էր գալիս բուխարինյան «թեորիան»՝ սոցիալիզմի մեջ կապիտալիստների ներաճելու և դասակարգային պայքարը մարելու մասին: Կուլակը կատաղի պայքար էր մղում կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների դեմ: Աջերն ընդառաջում էին կուլակին, հանդես գալով ի պաշտպանություն մանրգյուղացիական տնտեսության կայունության թեորիայի, քարոզելով ինքնահոսի «թեորիան», խորհրդային տնտեսության



սոցիալիստական և կապիտալիստական հատվածների «հավասարակշռության թեորիան»:

Կուլակը պահանջում էր անընդհատ բարձրացնել հացի գինը: Աջերը պաշտպանելով այդ պահանջը, ստեղծեցին «անընդհատ գնիջումների թեորիան»:

Աջ ռեստավրատորները գլորվեցին կապիտուլյանտային, կոմունիզմին թշնամի դիրքերը նաև միջազգային հարցերում: Բուխարինն առաջադրեց մինչև ուղն ու ծուծը մենշևիկյան մի «թեորիա»՝ «կազմակերպված կապիտալիզմի» մասին, որը կոծկում էր կապիտալիստական իրավակարգի գնալով աճող հակասությունները, թմրեցնում էր միջազգային պրոլետարիատի գիտակցությունն ու հեղափոխական ակտիվությունը: Բոլոր ռենեգատները և Կոմունիստական Ինտերնացիոնալի թշնամիները ձայնակցեցին այդ «թեորիային»: Աջ ռեստավրատորները համախմբման կենտրոն դարձան Կոմինտերնի շարքերը տրոցկած ամբողջ օպորտունիստական նեխվածքի համար:

Աջերն իրենց ամբողջ ռեստավրատորային ծրագրին «ուժ էին տալիս»՝ կատաղո-

րեն գրոհելով լենինիզմի դեմ։ Նրանց աջ օպորտունիստական, բուրժուական — լիբերալ «թեորիաներն» անմիջականորեն ուղղված եյին դասակարգային պայքարի և պրոլետարիատի դիկտատուրայի վերաբերյալ մարքսիստական — լենինյան ուսմունքի դեմ, ուղղված եյին սոցիալիստական շինարարության ուղիների և մեր յերկրում սոցիալիզմի հաղթանակի վերաբերյալ Լենինի-Ստալինի ուսմունքի դեմ։

Ընկեր Ստալինը 1929 թվականի Կենտկոմի ապրիլի պլենումում իր արտասանած պատմական ճառում անողոքաբար բացահայտեց աջ օպորտունիստական «թեորիաների» դասակարգայնորեն թշնամի արմատները։

«Ինչո՞ւմն է կապիտալիստների սոցիալիզմի մեջ ներաճելու բուխարինյան թեորիայի և դասակարգային պայքարը սրվելու հարցի բուխարինյան ըմբռնման վնասը»—ասում եր ընկեր Ստալինը։

«Նրանում, վոր նա թմրեցնում է բանվոր դասակարգին, քայքայում է հեղափոխական ուժերի մոբիլիզացիոն պատրաստությունը... և հեշտացնում է կապիտա-



լիստական տարրերի արշավն ընդդեմ Խորհրդային իշխանության»*)։

«Մեծ բեկման տարին» փտած տաշեղի նման կոտրեց աջերի «պլատֆորմը»։ Սոցիալիստական արշավի ստալինյան պլանը հաղթանակեց։

Ինդուստրացման նախորոք ուրվագծված տեմպը, վորի «ուժերից վեր» լինելու մասին աղաղակում եյին աջերը, գերազանցվեց։ Գյուղում կուսակցությունը գլխավորեց չքավորների ու միջակների բուռն հոսանքը դեպի կոլտնտեսությունները, մի հոսանք, վորը շուտով իր արտահայտությունը գտավ համատարած կոլեկտիվացման մեջ։ Դրա հիման վրա կատարվեց կուլակության, վորպես դասակարգի, վերացումը։

Աշխատավորները զայրույթով նշավակեցին սնանկացած ֆրակցիոներներին և նրանց ռեստավրատորական պլատֆորմը։ Սակայն աջերը շարունակում եյին իրենց սուր պայքարը սոցիալիզմի դեմ։

Աջերն սպեկուլյացիայի առարկա եյին դարձրել սոցիալիստական շինարարության

*) Ի. ՍՏԱԼԻՆ։ «Լենինիզմի հարցերը»։

դժվարությունները, կեղծավորություն և յերկերեսանիություն եյին անում, թաքցընում եյին կուսակցությունից իրենց բուն գործողությունները ու դիտավորությունները, քանիցս կապիտուլյացիայի եյին դիմել Կենտրոնական Կոմիտեյի առջև՝ որպեսզի հաջորդ օրը նոր ուժով վերսկսեն իրենց գրոհը կուսակցության դեմ: Այսպես, Համ. Կ(բ)Կ Կենտկոմի 1929 թվականի նոյեմբերի պլենումից առաջ նրանք քայքայիչ, ֆրակցիոն լայն գործունեյություն զարգացրին՝ տարածում եյին հակահեղափոխական թերթիկներ, կազմակերպում եյին բուրժուական լիբերալների, «յերիտասարդների բուխարինյան դպրոցի» աշակերտներ Սլեպկովի, Զայցևի, Այխենվալդի, Մարեցկու ֆրակցիոն ելույթները: Նրանք կատաստրոֆիկ պարտություն կրելով, խաբելով կուսակցությանը, պլենումում հանդես յեկան մի յերկերեսանի փաստաթղթով, որն ընկեր Կիրովը դիպուկ կերպով բնութագրեց որպես կապիտուլյացիա այսօրվա ու պլատֆորմ՝ վաղվա համար...

Յեվ, իրոք, 1930 թվականի գարնանը, յերբ կուսակցությունը դժվարությունների



հանդիպեց կոլտնտեսային շինարարության մեջ և պայքար սկսեց կոլեկտիվացման մեջ տեղի ունեցած խոտորումների դեմ, աջերը, կատարելով կուլակային գործակալության իրենց դերը, նորից գրոհ տվին կուսակցության դեմ, հարձակվեցին կուսակցության վրա: Ինչպես և տրոցկիստ-զինովյեվականները, նրանք իրենց հաշիվները կապում եյին դժվարությունների հետ, հույս ունեյին, շփոթություն առաջացնել կուսակցության շարքերում և հասնել կոլեկտիվացման տապալմանը:

Կուսակցությունը, ջնջելով աջերի դիմադրությունը, անշեղորեն առաջ եր գընում ստալինյան ճանապարհով:

Խորհրդային Միության աշխատավորները զայրույթով դեն շպրտեցին իրենց ճանապարհից կուլակային գործակալ աջ օպորտունիստներին:

Ժողովրդի աչքում դիմակազերծ աջերը բարեկամներ ձեռք բերին Խորհրդային իշխանության ամենավոխերիմ թշնամիների բանակում, որոնք ողջունում եյին աջերի հակակուսակցական գործունեյությունը և իրենց հակահեղափոխական հաշիվները կապում եյին նրանց հաղթանակի, ինչպես

և տրոցկիստ – զինովևականների հաղթանակի հետ։

Հակահեղափոխական Գրոմանը մենշեվիկ ինտերվենցիոնիստների դատավարության ժամանակ ցույց տվեց, վոր «աջ ոպոզիցիայից բխող բոլոր ծրագրերի պաշտպանումը» հակահեղափոխականների համար Խորհրդային իշխանության դեմ պայքարելու մեթոդներից մեկն եր։

Կուսակցության 16-րդ համագումարը՝ ամբողջ ճակատով ծավալված սոցիալիստական արշավի համագումարը՝ վերջնականապես ջախջախեց աջ ոպոզիցիան և հաշտվողականներին։ Համագումարը հայտարարեց, վոր աջ ոպոզիցիայի հայացքներն անհամատեղելի յեն Համ. Կ(բ)Կ-ին պատկանելու հետ։

Ընկեր Ստալինը համագումարում իր տված պատմական զեկուցման մեջ ակնառու կերպով ցույց տվեց, վոր աջ ռեստավրատորները «գործնականորեն գլորվում են մեր յերկրում սոցիալիզմ կառուցելու հնարավորությունը ժխտելու տեսակետի վրա»... «Իրոք հենց դրանով ե բացատրըվում այն փաստը, վոր աջ ուկլոնիստները տրոցկիստների դեմ իրենց մղած աքլորա-



կռիվները սովորաբար պսակվում են տրոցկիստների հետ բլոկ կնքելու իրենց կուլիսային բանակցություններով*)։

Աջ ոպոզիցիայի պարագլուխները դարձյալ մեղայի յեկան համագումարում, նրանք հայտարարեցին, թե կուսակցության գլխավոր գիծը ճիշտ ե։ Սակայն համագումարը չեր կարող խաբեբաների ու յերկերեսանիների խոսքին հավատալ և պահանջեց, վոր բանավոր հայտարարությունները հաստատվեն գործնական ակտիվ պայքարով հանուն կուսակցության գծի, ընդդեմ թշնամիների՝ աջերի, տրոցկիստների և հաշտվողականների։

## 3.

Հետագա տարիները ցույց տվին, վոր աջ ռեստավրատորներն ինչպես յեղել են, այնպես ել մնացել են կուսակցության վոխերիմ թշնամիներ, իրենց ծոցում քար են պահում, բարենպաստ մոմենտ են սպասում նորից կուսակցության հիմքը փորփրելու համար։ Աջ ռեստավրատորները կատաղած

*) Ի. ՍՏԱԼԻՆ։ «Լենինիզմի հարցերը».

իրենց լիակատար սնանկությունից ու պարտությունից, մերժված լինելով կուսակցության և Խորհրդային Միության աշխատավորների կողմից, խոր պահեցին իրենց կատաղությունն ընդդեմ կուսակցության և խորհրդային ժողովրդի:

1932 թվականին ժողովրդի դավաճան թշնամիներ Ուգլանովը, Ռյուտինը, Սլեպկովը, Մարեցկին տրոցկիստների հետ միասին ստեղծեցին մի հակահեղափոխական ընդհատակյա կազմակերպություն՝ կուսակցության և պրոլետարական դիկտատուրայի դեմ պայքարելու համար: Այդ բացահայտ հակահեղափոխականների բանդան առաջադրեց ԽՍՀՄ-ում կապիտալիզմը վերականգնելու ծրագիր՝ նա պահանջում եր բանալ դռներն օտարերկրյա կապիտալիզմի առաջ, լուծարքի յենթարկել խորհտնտեսություններն ու կոլտնտեսությունները:

Աջերի վողորմելի թափթփուկները վոտք դրին հակահեղափոխական ճանապարհի վրա, ստեղծեցին տեռորիստական ընդհատակյա խմբակներ, վորոնք անխզելիորեն կապված եյին տրոցկիստական — զինովյեվական բանդիտային շայկայի հետ: Նրանց եյին հարել նաև աջ-ձախ վիժվածքները:



Այդ սրիկաներն իրենց ամբողջ ատելությունն ուղղել եյին ստալինյան Կենտրոնական Կոմիտեյի դեմ, ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի դեմ:

Զուր չե, վոր ռեստավրատորների այդ տեռորիստական շայկան վայելում եր սրիկա Զինովյեվի և Կամենևի օժանդակությունը:

Ջախջախված աջ ոպոզիցիայի պարագլուխները չկատարեցին այն պարտավորությունները, վորոնք ստանձնել եյին կուսակցության 16-րդ համագումարում, շարունակում եյին ակտիվ ոգնություն ցույց տալ սոցիալիզմի թշնամիներին:

Այսպես՝ 1933 թ. հունվարին պարզվեց, վոր Տոմսկին, Ռիկովը, աջ ոպորտունիստ Շմիդտը կապ են պահպանում Եյսմոնտ—Տոլմաչով — Սմիրնովի հակահեղափոխական խմբակի հետ: Տոմսկին, Ռիկովը և Շմիդտն իրենց վարքագծով ամեն տեսակ հակակուսակցական տարրերին հիմք եյին տալիս իրենց ոգնության վրա հույս դնելու: Աջ ոպոզիցիայի նախկին պարագլուխներն ըստ եյության խրախուսում եյին Եյսմոնտ — Տոլմաչով — Սմիրնովի հակակուսակցական, հակահեղափոխական աշխատանքը:

կենտրոնական կոմիտեն Ռիկովից, Տոմսկուց և Շմիդտից պահանջեց արմատապես փոխել հակակուսակցական տարրերի դեմ մղվող պայքարում իրենց բռնած դիրքը:

Սակայն աջ ոպոզիցիայի նախկին պարագլուխներն ականջ չդրին բազմաթիվ նախազգուշացումներին:

Իրականությունը ցույց տվեց, վոր տրոցկիստ – զինովևյան լրտեսները, մարդասպանները, դիվերսանտները և Գեստապոյի գործակալներն աշխատում եյին կապիտալիզմի աջ ռեստավրատորների, նրանց պարագլուխների հետ ձեռք–ձեռքի տված:

Այս որերին, յերբ Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8–րդ Համագումարը հաստատեց ստալինյան Սահմանադրությունը, խորհուրդների յերկրի աշխատավորները կրկին ու կրկին ուշի–ուշով կարդում են եպոխայի այդ մեծագույն փաստաթղթի յուրաքանչյուր խոսքը: ԽՍՀՄ–ի ժողովուրդները վերհիշում են այն հերոսական պայքարը, վորով նվաճվել է այն բոլորը, ինչ վոր գրված է ստալինյան Սահմանադրության մեջ: Աշխատավորներն անշեղորեն հետևելով հեղափոխա-



կան զգաստության մասին ընկեր Ստալինի տված ցուցումներին, չեն մոռանում թշնամիներին, վորոնք ամեն կերպ քայքայում եյին սոցիալիստական արշավը և, գործելով տրոցկիստական–զինովևյան հակահեղափոխականների հետ միասին, ուզում եյին հանել կապիտալիզմի վերականգնմանը մեր յերկրում:

Տրոցկիստների, աջերի և կապիտալիզմի ամեն տեսակի այլ ռեստավրատորների ըստոր դերը, վորոնք տասնյակ անգամ յերդվել և նույնքան անգամ դավաճանել են, մեզ սովորեցնում է արթուն լինել ստալինաբար: Չի՛ կարելի հավատալ նախկին ոպոզիցիոներների խոսքին: Վո՛չ վոքի:

(«ՊՐԱՎԴԱ»)

# ԿՈՐՊՈՒՍԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ ԸՆԿ. Վ. Վ. ԽՐԻՊԻՆԻ ՃԱՌԸ

## (ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՌԱԶՄԱ-ՈԴԱՅԻՆ ՈՒԺԵՐԻ ՎԱՐՉՈՒԹՅԱՆ ՊԵՏԻ ՏԵՂԱԿԱԼ)

**Արտասանած Խորհուրդների 8-րդ Համամիութենական արտակարգ Համագումարում**

*Ոդային մարտիկները յերջանիկ են զեկուցելու Խորհուրդների Համամիութենական 8-րդ Արտակարգ Համագումարին, վոր նրանց մարտական մեքենաները, մեր ավիացիոն զորամասերի հազարավոր ինքնաթիռները միշտ պատրաստ են գործողության* (ծափահարություններ)։

*Նրանք բոլորը՝ մեր ոդաչուները, ըշտուրմանները, տեխնիկները, ինժեներները, մասնագետներն ու կարմիր բանակայինները — կուռ շարքերով, անխորտակելի պատի նման կանգնած են մեր Կոմունիստական Կուսակցության և մեր առաջնորդ ընկեր* Ստալինի *շուրջը* (ծափահարություններ)։ *Նրանք հավաստիացնում են Խորհուրդների 8-րդ Համագումարին, վոր բոլոր մարտիկները մեկ մարդու նման պատրաստ են մինչև վերջ կատարելու իրենց պատվավոր պարտականությունը, իրենց սրբազան պարտքը յերկրի հանդեպ, պաշտպանելով նրա սահմանները, նրա պաշտպանությանը նվիրելով իրենց բոլոր ուժերը, իրենց գիտելիքները, իրենց կյանքը* (ծափահարություններ)։

1933 *թ. հունվարին, ընկեր Ստալինը, ամփոփելով առաջին սոցիալիստական հնգամյակի արդյունքները, ամենանշանավոր հաղթանակների թվիլը դասեց մեր յերկրում ավիացիոն արդյունաբերության ստեղծվելը։ «Մենք ավիացիոն արդյունաբերություն չունեինք։ Այժմ մենք ունենք» — ասաց ընկեր Ստալինը։ Այսոր այդ հաղթանակը հսկայական, հիանալի պտուղներ տվեց։ Մեր ավիացիոն արդյունաբերությունն այս տարիների ընթացքում կառուցեց հազարավոր հիանալի ինքնաթիռներ, հիանալի մո-*

տորներ՝ նրանց նորագույն ամբողջ սպառազինությամբ և սարքավորմամբ։ Եվ այժմ մենք, իրավացի հպարտությամբ կարող ենք ասել, որ մեր մարտական ավիացիան, Կարմիր օդանավատորմը, ամբողջովին վերցրած, հաղթանակած սոցիալիզմի յերկրի հրաշալի ստեղծագործությունն է։

Մենք բոլորս էլ գիտենք, որ կապիտալիստական պետությունները տենդորեն պատրաստվում են նոր, մեծ պատերազմի։ Մենք գիտենք, որ այդ նախապատրաստության մեջ հսկայական ուժեր և միջոցներ են նետվում օդային սպառազինությունների զարգացման վրա։ Գերմանական և իտալական ֆաշիզմն առանձնապես համառորեն լարում են իրենց բոլոր ջանքերը՝ օդային հսկայական բանակի զարգացման վրա։

Միջազգային մամուլում, մասնավորապես անգլիական կին գրող Դոռոտի Վուդմանի հայտնի գրքի մեջ, մի ամբողջ շարք տվյալներ են բերված, որոնք բնութագրում են գերմանական ավիացիայի զարգացումը։ Այնտեղ վերջին տարիների ընթացքում մոբիլիզացիայի յեն յենթարկված մոտ հարյուր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնք մեքենաներ ու հրանոթներ են արտադրում ռազմական ավիացիայի սպառազինման համար։ Գերմանական օդային նավատորմի մարտական կազմը մինչ այսօր հասցված է առաջին գծի մինչև յերկու հազար գործող ինքնաթիռի, իսկ ինքնաթիռների ընդհանուր թիվը յերկրի ներսում հասնում է մոտավորապես 6—7 հազարի։ Գերմանական ավիացիոն արդյունաբերությունն ամսական արտարկում է ոչ պակաս, քան 300 ինքնաթիռ, որոնց զգալի մասը՝ ռմբակոծիչներ։

Մենք չենք կարող մոռանալ, որ Իտալիան հանդիսացավ այն յերկիրը, որտեղ առաջին անգամ ստեղծվեց անողոք օդային պատերազմ վարելու տեսությունը։ Գեներալ Դուեյի անունը պատմության մեջ մտավ, որպես հիմնադիր այն սարսափելի, ոչ մարդկային տեսության, որը քարոզում է ոչնչացնել խաղաղ բնակչությունն այն յերկրների քաղաքներում, գործարաններում, որոնց դեմ պատրաստ–

վում է պայքարել խաղաղական մարտնչող ֆաշիզմը։

Եթե մենք դիմելու լինենք գերմանական պաշտոնական «Լյուֆտվեր» ժուռնալին, ապա այս տարվա հրատարակված առաջին համարներում կգտնենք թվեր, վորոնք բնութագրում են մյուս կապիտալիստական յերկրների օդային նավատորմերի վիճակը։ Այդ տվյալների համաձայն, ճապոնական ավիացիայի մարտական կազմը բաղկացած է 2050 ինքնաթիռից։ Ամերիկյան օդային նավատորմի թվական կազմը հասցված է մինչև 2700 գործող ինքնաթիռի։ Այնպիսի պետություններում, ինչպիսիք են Անգլիան և Ֆրանսիան, օդային նավատորմը վորոշ չափով հետ է մնացել այդ խոշորագույն օդային նավատորմերի զարգացումից։ Անգլիական ավիացիայի թվական կազմը, անգլիական մամուլի տվյալներով, յեղել է 1200 ինքնաթիռ, չհաշված գաղութների ավիացիան։ Ֆրանսիական ավիացիան, վորը դեռ վոչ այնքան հեռու անցյալում իր միավորների թվով առաջին տեղն էր գրավում աշխարհում— 1935 թվականին ուներ մոտ 2000 ինքնաթիռ— իր առաջնությունը զի-



ջեց ամերիկյան ավիացիային, վորի հետեվից ընթանում է գերմանական օդային նավատորմը։

Անգլիական ու Ֆրանսիական օդային նավատորմերի զարգացման հետ մնալն անհանգստացրեց այդ յերկրների կառավարություններին և այժմ այդ յերկրներում արտակարգ միջոցներ են ձեռք առնված մարտական զորամասերը լայնորեն ծավալելու ուղղությամբ։

Դրան զուգընթաց, Գերմանիան, Իտալիան և Ճապոնիան անհրաժեշտ են գտնում գերազանցել Անգլիայի ու Ֆրանսիայի օդային նավատորմերի շինարարության այդ ծավալուն ծրագրերը։ Դրա հետեվանքով մենք կատաղի մրցավազք ենք նկատում օդային սպառազինման զարգացման գործում, վորի ընդհանուր թվական կազմն այսոր գլխավոր կապիտալիստական յերկրներում հասնում է մոտավորապես 11—12 հազար գործող ինքնաթիռի։

Դատելով այն տեմպից, վոր գոյություն ունի վերջին տարիներս, պետք է սպասել, վոր մեկ ու կես— յերկու տարուց այդ կազմը կաճի, հասնելով մինչև 17—18 հա-

պար գործող ինքնաթիռի: Սա հսկայական թիվ է:

Ժամանակակից օդային նավատորմը սարսափելի յե առանձնապես այն բանով, որ նրա կազմի մեջ առաջին տեղն է գրավում ռմբակոծող ավիացիայի զարգացումը, որի թվական կազմը Գերմանիայում հասցըված է մարտական մեքենաների ընդհանուր թվի մինչև 60 տոկոսին: Եթե հաշվելու լինենք ժամանակակից ռմբակոծող ինքնաթիռների բեռ բարձրացնելու կարողությունը, այսինքն՝ թե նրանք մեկ թռիչքի ժամանակ ինչ քանակությամբ մարտական զանազան կործանիչ արկեր կարող են փոխադրել, ապա մենք կունենանք մի վիթխարի թիվ, մոտավորապես 5—6 հազար տոնն ռումբ:

Պետք է նկատի ունենալ, որ ամբողջ համաշխարհային պատերազմի ընթացքում գերմանական օդային նավատորմն Անգլիայի, Ֆրանսիայի և ցարական Ռուսաստանի տերիտորիաների վրա նետել է 27 հազար տոնն ռումբ:

Բայց մենք չենք վախենում կապիտալիստների այդ օդային սպառնալիքներից: Մեր երկիրը կոփել է իր հզորագույն օ-



դային զենքը: Մեր օդային նավատորմն իր մարտական թվակազմով, սպառազինման որակով, օդային մարտիկների ռազմական ուսուցմամբ, կադրերի համախմբվածությամբ, առաջիկա մարտում անձնազոհություն ցուցաբերելու ընդունակությամբ առավել հզորագույնն է ամեն մի կապիտալիստական երկրի, ամեն մի օդային նավատորմի համեմատությամբ (ծափահարություններ):

Երկու տարի սրանից առաջ պաշտպանության ժողովրդական կոմիսար Խորհրդային Միության մարշալ ընկեր Վորոշիլովը 17-րդ կուսակցական համագումարին զեկուցել էր մեր Բանվորա-գյուղացիական Կարմիր բանակի վիճակի մասին: Նա հաղորդեց, որ «...մեր ռազմա-օդային ուժերն անճանաչելի յեն դարձել»: Մենք ստեղծեցինք ծանր ռմբակոծիչ հզոր ավիացիա և բարելավեցինք ավիացիայի մյուս բոլոր տեսակները:

Դիմելով ապագայի խնդիրներին, ընկեր Վորոշիլովն առանձնապես չեշտեց, թե մենք «պետք է ավելի արագորեն յուրացնենք նոր և կատարելագործված մոտորների սերիական արտադրությունը: Պետք է

ձիգ տալ մեր գիտահետազոտական ինստի-տուտների աշխատանքը մոտորների ասպա-րեզում»:

Ընկերներ, մենք կարող ենք մեծագույն գոհունակությամբ նշել, վոր այդ խնդիր-ներն իրագործվում են ամենափայլուն հա-ջողությամբ (ծափահարություններ):

Ահա ձեզ մի քանի թվեր: Այս տարվա տասն ամսվա ընթացքում մեր ավիացիոն արդյունաբերության ինքնաթիռի գործա-րանների արտադրանքն անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավելացել է համարյա կրկնակի չափով: Մենք ունենք 94,5 տոկոս աճում (աղմկա-լից ծափահարություններ):

Մոտորներ արտադրող գործարանների գծով մեր արդյունաբերությունն անցյալ տարվա հարյուր տոկոսի փոխարեն այս տարի տվել է 146 տոկոս (ծափահարու-թյուններ):

Առանձին ձեռնարկություններ այդ թվե-րից ե՛լ ավելի առաջ են անցել: Օրինակ, ինքնաթիռներ արտադրող մեր խոշորա-գույն գործարաններից մեկն այս տարվա տասն ամսվա ընթացքում մոտ յերեք ան-գամ գերազանցել է անցյալ տարվա արտա-դրանքը (ծափահարություններ):



Մեր «ԱՄ—34» մոտորն այդ տիպի լա-վագույն կոնստրուկցիաների շարքում ա-ռաջին տեղերից մեկն է գրավում աշխար-հում: Նա մրցում է անգլիական, ամերիկ-յան ու ֆրանսիական բոլոր լավագույն մո-տորների հետ: Այդ մոտորով մեր ծանր ոդանավերը նորանոր համաշխարհային ռե-կորդներ են սահմանում (ծափահարու-թյուններ):

Պաշտպանության ժողովրդական կոմիսա-րի տեղակալ Խորհրդային Միության մար-շալ ընկեր Տուխաչևսկին, ԽՍՀ Միության Խորհուրդների 7-րդ Համագումարում իր տված զեկուցման մեջ, թվեր բերեց մեր ավիացիայի աճման մասին, մատնանշելով, վոր վերջին չորս տարում ավիացիայի մար-տական կազմն ավելացել է 330 տոկոսով: Այսոր յես համագումարին պետք է հայտ-նեմ, վոր վերջին տարում մենք չենք նվա-զեցրել մեր տեմպը:

Մեր ոդային ուժերի մարտական թվա-կազմն աճել է ե՛լ ավելի և ավելի քան չորս անգամ գերազանցում է 1931—32 թվականի թվակազմից (բուռն ծափահա-րություններ):

Մենք ունենք ոսկադրիլներ, վորոնց մեջ

մանող մեր հրաշալի մեքենաները սավառնում էին Կարմիր Մոսկվայի վրա մայիսի 1-ին և նոյեմբերի 7-ին, սավառնում էին Լենինի քաղաքի վրա, Բելոռուսիայի, Ուկրաինայի, Մոսկվայի մարզի դաշտերի վրա աշնան մանևրների ժամանակ: Մենք կաշխատենք հետ չմնալ ամենաառաջավոր տարբերկրյա ոդային նավատորմերի ավիացիոն տեխնիկայից: (Բուռն, յերկարատև ծափահարություններ):

Դեռ վոչ այնքան հեռու անցյալում, ընդամենը 2—3 տարի սրանից առաջ, մեր յերկիրը հնարավորություն չուներ միջազգային մրցության ասպարեզ դուրս գալ՝ պայքարելու համաշխարհային ռեկորդների համար, վորպես տեխնիկական առաջադիմության ցուցանիշ, վորպես տեխնիկայի ամենաբարձր տիրապետման ցուցանիշ: Այժմ դրությունը խիստ փոխվել է: Դուք բոլորդ էլ հիշում եք, թե ինչպես 1934 թ. աշնանը մեր ոդանավակազմը՝ բաղկացած ոդաչուներ— Խորհրդային Միության հերոս Գրոմովից, Սպիրինից և Ֆիլինից, «ՌԴ» ինքնաթիռով սահմանեց մեր առաջին համաշխարհային ռեկորդը, առանց վայրեջքի անցնելով 12.411 կիլոմետր բեկբե-



կոտ ուղի: 1935 թ. ոդաչու Կոկկինակին գերազանցեց առաջ իտալական ոդաչու Դոնատիի սահմանած բարձրության համաշխարհային ռեկորդից, հասնելով 14.575 մետր բարձրության շարքային ինքնաթիռով: 1936 թվականն առանձնապես բնորոշ է համաշխարհային ռեկորդների վրա կատարած մեծ ծավալուն հարձակումով:

Ոգոստոսի 3-ին ոդաչու Կոկկինակին, տրանսպորտային «ՑԿԲ—26» ինքնաթիռով, 500 կիլոգրամ առևտրական բեռով հասնում է 13.110 մետր բարձրության և դրանով գերազանցում է ֆրանսիական ոդաչու Սինյերինի ռեկորդից, վորը պահպանվում էր 1932 թվականից:

Ոդաչու Ալեքսեյևը մի շարք ռեկորդային թռիչքներ է կատարում անընդհատ բարելավելով իր ցուցանիշները: 1936 թ. նոյեմբերի 1-ին, նա «ԱՆՏ—40» ինքնաթիռով, 1000 կիլոգրամ բեռով, հասավ 12.695 մետր բարձրության և 3715 մետրով գերազանցեց ոդաչու Սինյերինի ռեկորդից, վորը նույնպես պահպանվում էր 1932 թվականից: Սեպտեմբերի 11-ին ռազմական ոդաչու մայոր Յումաշևը, «ԱՆՏ—6» ինքնաթիռով համաշխարհային

ռեկորդ սահմանեց, հասնելով 8.102 մետր բարձրության 5000 կիլոգրամ առևտրական բեռով: Սեպտեմբերի 16-ին նա սահմանեց մի այլ համաշխարհային ռեկորդ, հասնելով 6.605 մետր բարձրության՝ 10 հազար կիլոգրամ բեռով: Առաջին դեպքում նա գերազանցել եր 1934 թ. հուլիսի 16-ին ֆրանսիական օդաչու Կուպեյի սահմանած ռեկորդից, իսկ յերկրորդ դեպքում, իտալական օդաչու Անտոնինիի 1930 թվականից ի վեր պահպանվող ռեկորդից, գերազանցելով վերջինս 3.418 մետրով: Ընկեր Յումաշևի հետ մրցության մեջ է մտնում մի այլ ռազմական օդաչու՝ ընկեր Նյուխտիկովը, ընկեր Բոլխովիտինովի ղեկավարությամբ մի խումբ ինժեներների կառուցած ինքնաթիռով: Նոյեմբերի 10-ին, ընկեր Նյուխտիկովը, այդ ինքնաթիռով, 10 հազար կիլոգրամ բեռով, հասավ 7.032 մետր բարձրության, իսկ նոյեմբերի 20-ին նույն ինքնաթիռով նա սահմանեց համաշխարհային նոր ռեկորդ, հասնելով 4.535 մետր բարձրության 13 հազար կիլոգրամ բեռով (ծափահարություններ):

Խորհրդային ավիացիայի փայլուն հաղթանակների ցանկը այդ ռեկորդներով չի սպառվում:



— Մենք բոլորս հիշում ենք, ընկերներ, մեզ հարազատ, մեզ համար թանկագին այն թռիչքը, վոր այս տարի կատարեց Չկալովի, Բելյակովի ու Բայդուկովի հերոսական անձնակազմը, ստալինյան մարշրուտով, 9.374 կիլոմետր յերկարությամբ:

Մենք բոլորս ուրախանում ենք մեր հաղթանակներով, մենք բոլորս պարծենում ենք Խորհրդային Միության հերոսներ՝ ընկերներ Լևանևսկու և Մոլոկովի հաջողություններով, վորոնք հիանալի պատմական թռիչքներ կատարեցին: Մենք բոլորս հիշում ենք ընկ. Գրոմովի թռիչքը Մոսկվայից Լենինգրադ և դեպի հետ մեկ ժամում 350 կիլոմետր միջին արագությամբ (ծափահարություններ):

Մարտական զորամասերի շարքերում շարքային օդաչուներն իրենց հրամանատարների ղեկավարությամբ որ-որի վրա խոշոր հաղթանակներ են ձեռք բերում տեխնիկայի տիրապետման ասպարեզում, այդ տեխնիկայի գործադրման բարդ պայմաններում: Յես այստեղ կբերեմ մի որինակ: Հարկավոր եր շտապ կարգով Խաբարովսկ փոխադրել ինժեներ Ստոմանին և մեխանիկ Բերդնիկին, դիմավորելու համար «ԱՆՏ-25» ինք

նաթիռի անձնակազմին, դիմավորելու մեր հերոսներին: Մեկ օրվա նախապատրաստությունից հետո, մեր զինվորական ոդաչու ավագ լեյտենանտ ընկ. Պրոսկուրովը հուլիսի 30-ին թռավ Մոսկվայից, իսկ հուլիսի 31-ին հաջողությամբ հասավ Խաբարովսկ (բուռն ծափահարություններ):

Մեր ավիացիան պատրաստվում է իրագործելու ամենաբարդ խնդիրներ, սակայն նա միշտ հիշում է, որ մենք վերջնական հաղթանակին կարող ենք հասնել այն ժամանակ, յերբ մեզ մոտ հաստատապես ապահովվի զինված ուժերի բոլոր տեսակների փոխադարձ գործակցությունը: Ավիացիան, հեծելազորի, հետևակի, հրետանու հետ միասին, անդուլ կերպով աշխատում է մեր մեքենայացված զորքերի հետ. նա տիրապետում է մարտական գործունեության նոր ձևերին:

Դուք գիտեք, որ մեր զորքի շարքերում, մեր յերիտասարդության շարքերում, ավիացիոն զորամասերում պատրաստվում են տասնյակ հազարավոր պարաշյուտիստներ—այդ քաջարի մարտիկները: Յես պետք է նշեմ, որ միայն Մոսկվայի շրջանի մա-



նյովրների ժամանակ, այս տարի, մեր ավիացիան հակառակորդ կողմի թիկունքը փոխադրեց ամբողջ մի հրաձգային դիվիզիա, ցած նետելով 2200 պարաշյուտիստ (բուռն ծափահարություններ): Նրանց հետևից պայմանական «հակառակորդի» թիկունքում իջեցվեց ավելի քան 3000 մարտիկ՝ մարտական տեխնիկայով ու կրակային միջոցներով:

Մեր հաղթանակները հսկայական են: Նրանք բազմապիսի յեն: Սակայն ամենահիանալի հաղթանակն ոդային նավատորմի շինարարության ճակատամասում՝ տասնյակ հազարավոր խիզախ ոդաչուների, տեխնիկների, ինժեներների ու այլ մասնագետների պատրաստումն է: Այդ գործում հսկայական դեր է խաղում և կխաղա մեր պանծալի, մարտական կարմրադրոշ լենինյան կոմյերիտմիությունը, որը մեզ տալիս է լավագույն մարդիկ (ծափահարություններ):

Յեվ յեթե Գերմանիայում գերմանական ոդաչուների գեներալ Գյորինգը լոզունգ է բաց թողել 70 հազար ոդաչու պատրաստելու, ապա մենք պետք է ունենանք ավելի քան հարյուր հազար ոդաչու: Այս թիվը բնավ ֆանտաստիկ չէ: Դա հենվում է մեր

ռեալ հնարավորությունների վրա: Մենք այդ խնդիրը,— տասնյակ հազարավոր նորանոր օդային մարտիկներ ու բոլոր կատեգորիայի մասնագետներ պատրաստելը,— կկատարենք նույնպիսի հաջողությամբ, ինչպես գլուխ ենք բերել կադրերի պատրաստումը մինչև այժմ:

Այս բոլոր հաղթանակներն անհնարին կլինեյին, յեթե օդային շինարարության ղեկավարմանն ամենամոտիկ մասնակցություն չունենար մեր իմաստնագույն առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը (ծափահարություններ): Ընկեր Ստալինը մեր Կարմիր օդային նավատորմի ամենամերձավոր բարեկամն է, նա գիտե նրա բոլոր կարիքները, ուղղություն է տալիս նրա տեխնիկական զարգացմանը: Նա ղեկավարում է օդային նավատորմի մեր ամբողջ բազմապիսի շինարարությունը: Այդ շինարարության մեջ ընկեր Ստալինին հսկայական օգնություն են ցույց տվել, ցույց են տալիս և ցույց կտան նրա զինակիցները— ծանր արդյունաբերության ժողովրդական կոմիսար ընկեր Օրջոնիկիձեն և պաշտպանության ժողովրդական կոմիսար, Խորհրդային Միության մարշալ ընկեր Վորոշիլովը (ծափահարություններ):



Մենք, օդային մարտիկներս, շնորհակալություն ենք հայտնում ընկեր Օրջոնիկիձեին և նրա ամենամերձավոր օգնական, ավիացիոն արդյունաբերության Գլխավոր Վարչության պետ ընկ. Մ. Մ. Կագանովիչին՝ հիանալի մարտական մեքենաների համար: Մենք լի յենք վստահությամբ, վոր մեր ծանր արդյունաբերությունը վաղը մեզ կտա էլ ավելի լավ վորակի, էլ ավելի կատարելագործված սպառազինում, վորպեսզի նա ամենալավը լինի աշխարհում:

Մեր սիրելի ժողկոմ, Խորհրդային Միության մարշալ ընկեր Վորոշիլովի ղեկավարությամբ (բուռն ծափահարություններ: Բոլորը վոտքի յեն կանգնում և ովացիա յեն սարքում ի պատիվ ընկեր Վորոշիլովի: Բացականչություններ՝ «Կեցցե՛ ընկեր Վորոշիլովը», «Ուռա՛ ընկեր Վորոշիլովին») աճում և բազմապատկվում են օդային նավատորմի մարտական զորամասերը, ամրապնդվում են նրա կադրերը, պատրաստվելով մեր յերկրի պաշտպանությանը՝ բոլոր սահմաններում: Եվ յեթե զենք ճոճող գերմանական ֆաշիստներն ու այլ յերկրների ֆաշիստներն սպառնում են մեր Խորհրդային Միությանը, ապա վայ նրանց,

յեթե մեր խորհրդային յերկիրը հարկադրված լինի գործի դնել պաշտպանության մեր բոլոր գործիքներն ու զենքերը (ծափահարություններ)։

Կեցցե՛ խորհուրդների յերկիրը, խաղաղության ու ազատության հենարանը, բոլոր աշխատավորների սոցիալիստական հայրենիքը։

Կեցցե՛ Խորհուրդների Համամիութենական Արտակարգ 8-րդ Համագումարը։

Կեցցե՛ մեր հաղթանակների կազմակերպիչ, մեծ առաջնորդ և իմաստուն ուսուցիչ, մեր բարեկամ ընկեր Ստալինը (բուռն ծափահարություններ, մի քանի րոպե շարունակվում է ովացիան ի պատիվ ընկեր Ստալինի։ Բացականչություններ՝ «Կեցցե՛ ընկեր Ստալինը», «Ուռա՛ ընկեր Ստալինին»)։

Լ. Մ. ԿԱԳԱՆՈՎԻՉ.—Խորհրդային Միության ոդային նավատորմի ստեղծողին, մեր պանծալի բազեների՝ խորհրդային ոդաչուների դաստիարակին՝ ընկեր Ստալինին, մեր բարձրաձայն ուռան։ (Վորոտալից «ուռան» տարածվում է ամբողջ դահլիճը։ Բոլորը վոտքի յեն կանգնում և բուռն յերկարատև ովացիա սարքում ի պատիվ ընկեր Ստալինի)։

«ՊՐԱՎԴԱ» № 329. 1936 թ.

# ԸՆԿԵՐ Վ. Մ. ՈՐԼՈՎԻ ՃԱՌԸ

## (ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԾՈՎԱՅԻՆ ՈՒԺԵՐԻ ՊԵՏ, ՆԱՎԱՏՈՐՄԻ ԱՌԱՋԻՆ ԿԱՐԳԻ ՖԼԱԳՄԱՆ)

**Արտասանած Խորհուրդների 8-րդ Համամիութենական արտակարգ Համագումարում**

Ստալինյան Սահմանադրության նախագիծը քննության է առնվել Բանվորա-Գյուղացիական Կարմիր Նավատորմի բոլոր նավերի վրա, բոլոր մարտկոցներում ու բոլոր մերձափնյա զորամասերում և լիակատար ու միակամ հավանության արժանացավ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի ծովային ուժերի ամբողջ անձնակազմի կողմից (ծափահարություններ)։

Բանվորա-Գյուղացիական Կարմիր Ծովային Նավատորմի մարտիկներն ու հրա-

մանդատները հատուկ գոհունակությամբ էին նշում պաշտպանության կազմակերպման շահերի և մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ուժեղացման սպառիչ արտացոլումը Սահմանադրության նախագծի մեջ, մասնավորապես նրա 1, 2, 3, 5, և 10-րդ գլուխներում:

Թույլ տվեք ինձ, վորպես նավաստու, համառոտակի շոշափել մեր մեծ Խորհրդային Միության ծովային պաշտպանության հարցերը:

Նախ և առաջ մի քանի խոսք ասեմ արտասահմանի, կապիտալիստական աշխարհի ծովային սպառազինման մասին: Իմպերիալիստական յերկրների կատաղի մրցավազքն սպառազինման ասպարեզում՝ հանրածանոթ է և արտացոլվում է ինչպես կապիտալիստական յերկրների ռազմական բյուջեների աճման մեջ, այնպես և բուն սպառազինման անընդհատ փաստական աճման մեջ՝ իմպերիալիստական յերկրների ռազմական նավատորմերի, ցամաքային բանակների ու օդային ուժերի գծով:

Բնորոշ է, վոր կապիտալիստական աշ-



խարհի մի շարք յերկրներում ծովային բյուջեները գերազանցում են ընդհանուր ռազմական բյուջեներից, իսկ ծովային նավատորմերի աճումն այդ իմպերիալիստական պետություններում, առանձնապես վերջին տարիների ընթացքում, գերազանցում է զորքի այլ տեսակների աճումից: Սպառազինման մրցավազքի հետևանքով, գլխավոր «ծովային պետությունները» ներկայումս իրենց տրամադրության տակ ունեն այնպիսի ռազմական նավատորմ, վորի կազմն արտահայտվում է ընդհանուր տոննաժի հսկայական թվով՝ 500 հազար տոննից մինչև 1·300—1·400 հազար տոնն մարտական նավատորմի ջրատարողություն այդ պետություններից յուրաքանչյուրի համար: Բայց բանը դրանով չի սահմանափակվում: Ցամաքային ու ծովային ուժերի ծավալմանը զուգընթաց, արագացվում է նոր մարտական նավերի շինարարությունը, նավեր, վորոնք հագեցված են հզոր սպառազինմամբ, հզոր մարտական տեխնիկայով: Հատուկ ուշադրության է արժանի Ճապոնիայի, Գերմանիայի, ինչպես և Իտալիայի ծովային սպառազին-

ման աճումը: Այդ յերեք յերկրները միացել են Լոնդոնի 1936 թվականի համաձայնությանը, վորը ծովային սպառազինման վորոշ վորակական սահմանափակում է նախատեսում, իսկ փաստորեն նրանք իրենց լիակատար ազատություն են վերապահել իրենց ծովային ուժերի հետագա զարգացման գործում:

Ֆաշիստական Գերմանիան, խախտելով իր ծովային սպառազինումների՝ Վերսալյան պայմանագրով նախատեսված սահմանափակումները, հասավ այն բանին, վոր անցյալ տարի անգլո-գերմանական ծովային պայմանագրի համաձայն, Անգլիան իրավունք տվեց նրան իր ռազմական նավատորմը հասցնելու աշխարհում առաջին տեղը գրավող անգլիական ռազմական նավատորմի ընդհանուր տոննաժի 35 տոկոսին: Սուզանավերի ասպարեզում Գերմանիան իրավունք ստացավ սուզանավեր կառուցել անգլիական ստորջրյա նավատորմի տոննաժի 45 տոկոսի չափով: Այդ բոլորը ի վերջո տալիս է նավատորմի 420—425 հազարի հասնող տոննաժ: Այդպիսով կարելի յե ասել, վոր Գերմա-



նիան ամենամոտիկ տարիներում իր նավատորմի կազմում կունենա առնվազն 9 գծանավ, վորոնք հանդիսանում են ժամանակակից նավատորմերի հզորության հիմքը, 15 հածանավ, վորից 5-ը ծանր, միքանի ավիակիր, առնվազն 50 եսկադրային ականակիր և 50 սուզանավ: Ազգերի Լիգայի ս. թ. առ. 1-ը սեպտեմբերի ունեցած պաշտոնական տեղեկությունների համաձայն, Գերմանիայում կառուցման մեջ է գտնվում 37 մարտական նավ, 114,5 հազար տոնն ջրատարողությամբ:

Ճապոնիան նավաշինարարական ընդարձակ ծրագիր է իրագործում դեռ 1931 թվականից սկսած, այդ ծրագիրը պարունակում է մոտ 100 մարտական նավի կառուցում, ավելի քան 160 հազար տոնն ընդհանուր ջրատարողությամբ: Ներկայումս Ճապոնիայում, Ազգերի Լիգայի տեղեկությունների համաձայն, կառուցման մեջ է գտնվում 31 նավ՝ 79,5 հազար տոնն ջրատարողությամբ: Ճապոնիայի մարտական նավատորմի ընդհանուր տոննաժն առ. 1-ը հունվարի 1936 թվականի հասել եր 830 հազար տոննի:

Գերմանիայից և Ճապոնիայից աշխատում

և հետ չմնալ նաև ֆաշիստական Իտալիան, վորն Ազգերի Լիգայի այդ նույն պաշտոնական տվյալների համաձայն, ներկայումս կառուցման մեջ ունի 35 մարտական նավ (112 հազար տոնն), այդ թվում՝ 2 խոշոր գծանավ:

Խոսելով կապիտալիստական աշխարհի ծովային սպառազինումների մասին, չի կարելի կանգ չառնել նաև հարցի մյուս կողմի վրա: Նշանակություն ունեն ռազմական նավատորմի վոչ միայն քանակական, այլև վորակական ցուցանիշները:

Ժամանակակից ծովային նավատորմը նման չէ 1914—18 թվականի իմպերիալիստական պատերազմի շրջանի նավատորմին: Այժմ ավելացել է հրետանու հեռահարությունը, նավերն ավելի յեն հագեցված հրետանային ու տորպեդային սպառազինմամբ, մտցված են քիմիական հարձակման նոր միջոցներ, ավելացել է նավերի արագությունը, նավատորմի սպառազինման մեջ մտցվել է նավային ավիացիա, կատարելագործվել են հրետանային հրաձգության մեթոդները և, ժամանակակից ծովային մարտի միջին դիստանցիան ավելանալու կապակցությամբ, ստեղծվել են ամենաճշգրիտ



օպտիկ ու մեխանիկ գործիքներ, վորոնք ապահովում են նշանակետը գտնելու ժամանակի ամենալավագույն կրճատումը և հակառակորդին խփելու մեծագույն հավանականությունը:

Մարտական նավերի տեխնիկան աճել է մեքենաշինության բնագավառում: Կառուցվում են ավելի թեթև և ավելի հզոր մեքենաներ: Նավակառուցման ասպարիզում այժմ ավելի լավ են պատում մարտանավերի իրանները: Այդ հանգամանքը մարտանավերին հնարավորություն տվեց ավելացնելու բեռնավորման այն մասերը, վորոնք վերաբերում են սպառազինման, հարձակման և պաշտպանության միջոցներին, նվազեցնելով մեքենաների և նավային բոլոր մեխանիզմների կշիռն ու ծավալը:

Սրանք են այն առանձին փաստերը, վորոնք բնութագրում են կապիտալիստական յերկրների ծովային սպառազինման աճումը:

Այնպիսի ահեղ փաստերի դեմ հանդիման, ինչպիսին է իմպերիալիստական նոր պատերազմի վտանգի ուժեղ աճումը՝ առանձնապես Գերմանիայի ու Ճապոնիայի կողմից, Հաբեշստանում, Իսպանիայում, Չինաստանում և Մանջուրիայում ծավալ-

ված հափշտակողական պատերազմների
վտանգին դեմ հանդիման, մեր կուսակ-
ցությունը և խորհրդային կառավարությու-
նը բնականաբար չեյին կարող անպաշտպան
կամ վատ պաշտպանված վիճակում թողնել
մեր ծովային ափերը, վորոնք Խորհրդային
Միության սահմանների համարյա յերկու-
յերրորդ մասն են կազմում:

Բնավ մեր խնդիրը չդարձնելով ագրեսիվ
նպատակների համար նավատորմ ստեղծելը,
մենք պետք է ստեղծեյինք, և վերջին տա-
րիների ընթացքում ստեղծեցինք, հզոր
պաշտպանողական նավատորմ, զուգակցելով
ծովափնյա պաշտպանության միջոցների և
ծովային ավիացիայի հետ:

Համամիութենական Կոմունիստական (բոլ
շևիկների) Կուսակցության 17-րդ համա-
գումարում ունեցած իր յելույթի ժամանակ,
Խորհրդային Միության առաջին մարշալ,
պաշտպանության յերկաթե ժողկոմ ընկեր
Վորոշիլովը (բուռն ծափահարություններ)
ասաց, վոր «Խորհրդային Միության պաշտ-
պանունակությունն ամրապնդելու ուղղու-
թյամբ ծավալված վիթխարի աշխատանքի
մեջ, վոր կատարվում է կուսակցության
կենտրոնական կոմիտեյի ղեկավարությամբ



և նրա օգնությամբ, մենք չեյինք կարող
սահմանափակվել միայն ցամաքային ուժե-
րով ու ավիացիայով: Ընկեր Ստալինի մըշ-
տական ու անմիջական մասնակցությամբ
և ղեկավարությամբ, մենք աշխատում ենք
նաև մեր ռազմա-ծովային ուժերը ուժեղաց-
նելու ուղղությամբ, վորոնք մի քանի հա-
զար կիլոմետր ծովային բաց սահման ու-
նեցող մեր յերկրի պաշտպանության հա-
մար չափազանց մեծ նշանակություն ու-
նեն»:

Քննարկելով ստալինյան Սահմանադրու-
թյան նախագիծը, մենք իրավունք ունենք
կատարել այն աշխատանքի վորոշ հանրա-
գումարը, վորի մասին ընկեր Վորոշիլովը
խոսել եր մեր կուսակցության 17-րդ հա-
մագումարում:

Յեթե մեր նավատորմի նավային կազմն
առ 1-ը հունվարի 1933 թվականի (2-րդ
հնգամյակի սկզբին) վերցնելու լինենք վոր-
պես 100 տոկոս, ապա 1936 թվականի վեր-
ջերին սուզանավերի կազմը (վորոնց կա-
ռուցման վրա անցած ժամանակամիջոցում
մենք գլխավոր շեշտն ենք դրել) կարտա-
հայտվի 715 տոկոսով (ծափահարություն-
ներ): Մանր մարտական նավերի թիվը,
վորոնք սուզանավերի հետ միասին, պաշտ-

պահում են մեր ափերը, այդ նույն ժամանակամիջոցում կազմել է 300 տոկոս (ծափահարություններ): Ծովային պաշտպանության հեռահար ծանր հրետանու հրանոթների քանակը մատնանշված ժամանակամիջոցում աճել է 75 տոկոսով: Նավատորմի բազաների զենիթային պաշտպանությունը, հրետանու քանակի տեսակետից, ուժեղացված է 100 տոկոսով, այսինքն՝ 2 անգամ: Վերջապես, խիստ կերպով աճել է ծովային ավիացիան, որն այժմ, 1933 թվականի համեմատությամբ, կազմում է 510 տոկոս (ծափահարություններ):

Այսպես, մենք, մեր արդյունաբերության և նրա ղեկավար ընկեր Օրջոնիկիձեյի (ծափահարություններ) օգնությամբ, մեր գործարանների բանվորների ու ինժեներների ջանքերով, նախ և առաջ Լենինգրադի գործարանների՝ առաջ ընկեր Ս. Մ. Կիրովի ղեկավարությամբ, իսկ այժմ՝ ընկեր Ա. Ա. Ժդանովի ղեկավարությամբ (ծափահարություններ), ամրապես ուժեղացրինք մեր պաշտպանությունը ծովի կողմից:

Այս բոլորը, ընկերներ, մեծ աշխատանք պահանջեց նավատորմի համար կադրեր պատրաստելու ուղղությամբ, նոր մարտա-



կան նավեր շահագործման հանձնելու ուղղությամբ, նոր մարտական տեխնիկայի, նոր սպառազինման յուրացման ուղղությամբ, նավերի ու միավորումների ամբողջ մարտական պատրաստությունը ծավալելու ուղղությամբ:

Անհրաժեշտ չափով ավելացվեց մեր ռազմա-ծովային ուսումնական հաստատությունների ու դպրոցների ուսանողների և ունկնդիրների կազմը: Նավատորմի հրամանատարական կադրերն արդեն համալրվել են ռազմա-տեխնիկական ուսումնական հաստատությունների տված շրջանավարտներով՝ զգալի քանակությամբ յերիտասարդ, ընդունակ, իրենց գործն իմացող կուսակցական և ոչ կուսակցական բոլշևիկ հրամանատարներով: Այդ գործում մեզ մեծ օգնություն է ցույց տալիս կոմյերիտմիությունը, որը ամեն տարի առանձնացրել է և առանձնացնում է հազարավոր լավագույն կոմյերիտականներ՝ բանվորներից ու կոլտնտեսականներից (ծափահարություններ):

Ծովային նավատորմի կադրերի պատրաստումը մենք կատարում ենք նավատորմի շինարարության ծավալմանը զուգըն-

թայ. Ինչպես և արդյունաբերության մեջ, նոր կադրերը կոփվում և ստեղծվում են նոր մարտանավերի շինարարության օբյեկտների յուրացման պրոցեսում: Այդ միակ ճիշտ ուղին մատնանշել են մեզ կուսակցությունն ու կառավարությունը և այդ ասպարեզում մենք արդեն խոշոր դրական արդյունքներ ունենք:

Աճել է կարմիր նավատորմայինների տեխնիկական գրագիտությունը: Այժմ մենք նավատորմում ունենք կրտսեր հրամանատարների և գերժամկետիկների հրաշալի կադրեր: Իսկ պետք է շեշտել, վոր ռազմական նավատորմի համար, վորը հանդիսանում է տեխնիկապես ամենահագեցված որգանիզմ, կրտսեր հրամանատարների ու գերժամկետիկների կադրերը վճռական դեր են խաղում: Այդ ստորին օղակում տեխնիկային տիրապետելը, մարտական պարտականությունների ճիշտ կատարումը վորոշում է մարտական պատրաստության հաջողությունը, կանխորոշում է զենքի մարտական օգտագործման հաջողությունը: Այժմ մենք կարող ենք հայտարարել, վոր մեր կրտսեր հրամանատարների, գերժամկե-



տիկների, կարմիր նավատորմային մասնագետների կադրերն ունեն ծովային լավ հմտություններ և տեխնիկական ամուր պատրաստություն: Այդ կադրերով մենք իրավամբ կարող ենք պարծենալ, վորպես լիովին համապատասխանող այն պատասխանատու խնդիրներին, վորոնք դրված են նրանց առջև:

Իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների դպրոցն անցած՝ հին ծովայինների հետ միասին, մենք ունենք մեծ թվով յերիտասարդ հրամանատարներ: Ամենավերջին տարիներս դպրոցներն ու ԲՈՒՀ-երն ավարտած այդ կադրերը հաջողությամբ հրամանատարություն են անում նավերի վրա և մեծ հաջողությամբ բարդ խնդիրներ են իրագործում մեխանիզմների մոտ ու նավապետային կամրջակի վրա:

Ծովային ուժերի ավելի քան 500 հրամանատարներ, քաղաշխատողներ ու կարմիր նավատորմայիններ (դրանցից 300-ը՝ սուզանավորդներ), անցյալ տարի և ընթացիկ տարում պարգևատրվել են Խորհրդային Միության շքանշաններով: Նրանք՝ ծովային նավատորմի անձնակազմի այդ առաջա-

վոր ջոկատը, ցայտուն կերպով արտացոլում են մեր նվաճումները նավատորմի մարտական պատրաստության ասպարեզում (ծափահարություններ)։

Մեր նավատորմի մարդիկ, վորոնց մեծ մասը յերեկվա կոլտնտեսականներ ու բանվորներ են, պատվով են կատարում իրենց սրբազան պարտքը, հայրենիքի հանդեպ՝ Խորհրդային Միության ծովային սահմանները պաշտպանելու գործում, և գործնականում ապացուցում են իրենց նվիրվածությունը սոցիալիստական հայրենիքին։

Ընթացիկ տարին հավերժացավ առանձնապես մեր սուզանավորդների խոշոր հաջողություններով և աչքի ընկնող նվաճումներով՝ բոլոր նավատորմերում՝ Բալտիկ ծովի, Խաղաղ ովկիանոսի, Սև ծովի նավատորմերում։ Մեր ստորջրյա նավատորմի մարտական պատրաստության ընդհանուր աճմանը զուգընթաց, զգալի թվով սուզանավեր գերակատարեցին սահմանված տեխնիկական նորմաները՝

1) ծովում անընդհատ, տևական նավարկության գծով՝ առանց վորևե պաշար լրացնելու, 2) յերկար ժամանակ անընդհատ



ջրի տակ մնալու գծով և 3) իրենց բազաներից մեծ հեռավորության վրա տևական նավարկություն կատարելու գծով։

Յես կարող եյի բերել այդ բնագավառներում մեր սուզանավորդների ունեցած նվաճումները հաստատող տասնյակ որինակներ, բայց կսահմանափակվեմ մի քանի փաստերով՝

Խաղաղ ովկիանոսյան նավատորմի մի սուզանավ, կոմյերիտական Պոտյոմկինի հրամանատարությամբ, կրկնապատիկ գերազանցեց առանց պաշարը լրացնելու անընդհատ ծովում մնալու նորման, ընդվորում ջրի տակ մնաց նավարկության ամբողջ ժամանակամիջոցի 50 տոկոսի չափով (ծափահարություններ)։

Բալթիկ կարմրադրոշ նավատորմի նույն տիպի սուզանավերի միավորումը հին սուզանավորդ Նեմիրովիչ-Դանչենկոյի հրամանատարությամբ, նույն նորման գերազանցեց արդեն վոչ թե յերկու անգամ, այլ 2,3 անգամ։ Ընդսմին սուզանավերը ջրի տակ մնացին ընդհանուր առմամբ ամբողջ արշավի նույնպես 50 տոկոսի չափով (ծափահարություններ)։

Խաղաղ օվկիանոսյան նավատորմի սուզանավը, Կլեվենսկու հրամանատարությամբ, յեռապատիկ գերազանցեց ջրի տակ անընդհատ մնալու նորման: Դա ընկերներ, ամենադժվարին խնդիրներից մեկն է, վորոնք միայն կարող են դրվել սուզանավորդների առջև (ծափահարություններ):

Խաղաղ օվկիանոսյան նավատորմի մի սուզանավ, Մաթվեյևի հրամանատարությամբ, նույն նորման գերազանցեց 4 անգամ (ծափահարություններ):

Յեվ, վերջապես, ընկերներ, Սևծովյան նավատորմի՝ ընկեր Ծառակու հրամանատարությամբ գործող սուզանավը նույն նորման գերազանցել է 4,7 անգամ (ծափահարություններ):

Բալտիկ, Սևծովյան և Խաղաղօվկիանոսյան նավատորմերի սուզանավերի մի շարք միավորումներ ալեկոծության ամենաաննպաստ պայմաններում լրիվ կազմով գերակատարել են տեխնիկական նորմաները 2—2,5 անգամ:

Յես չեմ հիշատակի բոլոր գերազանցիկ հրամանատարների անունները, վորոնք իրենց բարդ խնդիրները կատարել են մեծ



հաջողությամբ: Կնշեմ միայն մեկ յերիտասարդ հրամանատարի՝ Խաղաղօվկիանոսյան նավատորմի սուզանավի հրամանատար ընկեր Շչերբատովի անունը, վորը նավատորմ է յեկել 1933 թվականին և ծովում արդեն ցույց է տվել անձնազոհության, սուզանավի տեխնիկայի հմտորեն տիրապետելու օրինակներ:

Նշեմ նաև, վոր Խաղաղօվկիանոսյան նավատորմի յերեք սուզանավերի ամբողջ անձնակազմն, աչքի ընկնող մարտական պատրաստության համար, լրիվ պարգևատրվել է Խորհրդային Միության շքանշաններով (ծափահարություններ):

Փոքր նվաճումներ չունեն և՛ վերջրյա նավատորմը, և՛ ծովային ավիացիան, և՛ մերձափնյա պաշտպանությունը: Կարելի յե հիշատակել զգալի թվով հրամանատարներ, քաղաշխատողներ և կարմիր նավատորմայիններ, վորոնք գերազանցորեն ու անձնվիրաբար են կատարում իրենց աշխատանքը և ուսումը: Յես սահմանափակվեցի ամենաբնորոշ, ամենատիպական օրինակներ բերելով մեր սուզանավորդների աշխատանքից, վորոնք ընթանում են նավատորմի

մարտիկների, հրամանատարների, ամբողջ անձնակազմի առաջապահ շարքերում:

Այդ բոլոր հաջողությունները ձեռք են բերվել այն հսկայական և համառ աշխատանքի շնորհիվ, որ կատարվել ե նավատորմում Կարմիր բանակի մեր սիրելի առաջնորդ Կլիմենտիյ Յեֆրեմովիչ Վորոշիլովի անմիջական ղեկավարությամբ ու ցուցումներով (բուռն ծափահարություններ):

Այդ բոլոր հաջողությունների արդյունք են նաև մեր յերկրի ընդհանուր աճման, մասնավորապես արդյունաբերության նվաճումների, մի արդյունաբերություն, որն ապացուցեց, թե ինքը կարող ե հաջողությամբ կառուցել ամենաբարդ նավերը: Յեվ իսկապես, այն նավերը, որ մենք ստացել ենք մեր արդյունաբերությունից, հնարավորություն տվին նավատորմի անձնակազմին, տեխնիկային հմտորեն տիրապետելով, զգալիորեն ավելի արդյունքներ ստանալ, քան նախատեսված եր նավերը կառուցելու ժամանակ: Մեր նավերը վատ չեն, մեր արդյունաբերությունը սովորել ե նավեր կառուցել (ծափահարություններ):



Ընկերնե՛ր, մենք պետք ե շարունակենք մեր Խորհրդային Միության ծովային կարողության ուժեղացումը, որպեսզի հետ մղենք ծովային գիշատիչների ամեն մի տրամադրություն՝ հանցավոր նպատակներով քիթը խոթելու մեր խորհրդային ափերը (ծափահարություններ), որպեսզի մեզ լիովին ապահովենք այդպիսի փորձերից, ում կողմից ել կատարվեն դրանք:

Հաշվի առնելով ամբողջ միջազգային իրադրությունը, մեզ շրջապատող կապիտալիստական աշխարհում տեղի-ունեցող բոլոր դեպքերը, մենք պետք ե կառուցենք և այժմ կառուցում ենք, իսկական մեծ նավատորմ, որը պարունակում ե բոլոր տեսակի նավեր և տեխնիկական ամենաբարձր մակարդակի վրա յե գտնվում (ծափահարություններ):

Կուսակցության ու կառավարության ղեկավարությամբ, ժողովուրդների մեծ առաջնորդ, մեր հարազատ Ստալինի ղեկավարությամբ և ուղղակի ցուցումներով, այդ խնդիրը կկատարվի լիովին և ամենակարճ ժամկետում (յերկարատև ծափահարություններ):

*Ընկեր Լենինը, 1917 թվականի Հոկտեմբերյան հեղափոխության նախօրյակին, իր անմահ հոդվածներից մեկում, խոսելով բուրժուազիայի իշխանության տապալումը կազմակերպելու և զինված ապստամբության մասին, մեր նավատորմը դասում էր պրոլետարական հեղափոխության* գլխավոր *ուժերի շարքը: Ինչպես հայտնի յե, 1917 թվականի Հոկտեմբերին նավատորմը քաջարի կերպով կատարեց ընկեր Լենինի, Լենին-Ստալինի կուսակցության ցուցումները* (ծափահարություններ)։

*Մեր Բանվորա-Գյուղացիական Կարմիր նավատորմը այսուհետև ավելի ևս հաջողությամբ կզարգանա ընկեր Ստալինի ցուցումներով, հետագայում ավելի ևս կհանդիսանա գլխավոր ուժերից մեկը՝ բանվորների ու գյուղացիների մեր սոցիալիստական պետության անխորտակելի պաշտպանության գործում* (յերկարատև ծափահարություններ)։

(Ընկեր Վորոշիլովի յելույթը նախագա-



հության մեջ՝ դիմավորվում է բուռն ծափահարություններով, վորոնք փոխարկվում են ովացիայի: Բոլոր պատգամավորները վոտքի յեն կանգնում)։

*«ՊՐԱՎԴԱ»* № 328, 1936 *թ.*



ների, Միութենական Ինքնավար Հանրապետությունների ու-
մասին

| …ա-թ. | Ամենից ավելի բազմաքանակ ազգություններ (բնակչության %-ային անի հարաբերությամբ) |
|---|---|
| 49 | |
| 79 | Ռուսներ—73,4, Ուկրայնացի—7,8, Ղազախներ—3,8, Թաթարներ—2,8 |
| 8[illegible] | Թաթարներ—50,4, Ռուսներ—41,8 |
| 9[illegible] | Բաշկիրներ—23,5, Ռուսներ—39,9, Թաթարներ—17,3 |
| 49 | Լեռնականներ (Горцы)—64,5, Ռուսներ—12,5 |
| 21 | Բուրյաթներ—43,8, Ռուսներ—52,7 |
| 7[illegible] | Կաբարդիններ—60, Բալկարներ—16,3 |
| 8[illegible] | Կալմիկներ—75,6, Ռուսներ—10,7 |
| 72 | Կարելներ—37,4, Ռուսներ—57,1 |
| 76 | Զիրյաններ (Зиряны)—92,3, Ռուսներ—6,1 |

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| [illegible] ԻԽՍՀ | 6 | Օրջոնիկիձե | 167 | 119 | |
| Ուդմուրտյան ԻԽՍՀ | 32 | Իժևսկ | 714 | 158 | |
| Չեչենո-Ինգուշյան ԻԽՍՀ | 15 | Գրոզնի | 444 | 206 | |
| Չուվաշյան ԻԽՍՀ | 18 | Չեբոկսարի | 893 | 66 | |
| Յակուտյան ԻԽՍՀ | 3031 | Յակուտսկ | 275 | 53 | |
| **Ինքնավար մարզեր** | | | | | |
| Ադիգեյի ԻՄ | 3 | Մայկոպ | 136 | 1 | |
| Հրեական ԻՄ | 37 | Բիրոբիջան | 25 | 25 | |
| Կարաչայի ԻՄ | 10 | Միկոյան Շահար | 101 | 3 | |
| Օյրոթյան ԻՄ | 93 | Օյրոթ-Տուրա | 110 | 12 | |
| Խակասյան ԻՄ | 50 | Աբական | 99 | 75 | |
| Չերկեսյան ԻՄ | 3 | Սուլիմով | 57 | 23 | |
| Ուկրաինական ԽՍՀ | 443 | Կիև | 24743 | 7159 | 319 |
| Մոլդավական ԻԽՍՀ | 8 | Տիրասպոլ | 552 | 64 | 6 |
| Բելոռուսական ԽՍՀ | 127 | Մինսկ | 4519 | 890 | 5 |
| Ադրբեջանական ԽՍՀ | 86 | Բաքու | 1921 | 970 | 28 |
| Նախիջևանի ԻԽՍՀ | 5 | Նախիջևան | 99 | 18 | 1 |
| Լեռնային Ղարաբաղի ԻՄ | 4 | Ստեփանակերտ | 143 | 11 | 1 |
| Վրացական ԽՍՀ | 70 | Թբիլիսի | 2306 | 805 | 31 |
| Աբխազական ԻԽՍՀ | 9 | Սուխումի | 201 | 58 | 2 |
| Աջարական ԻԽՍՀ | 3 | Բաթումի | 87 | 67 | 1 |
| Հարավ-Օսեթական ԻՄ | 4 | Ստալինիր | 88 | 8 | |
| Հայկական ԽՍՀ | 30 | Երևան | 845 | 264 | 11 |
| Թուրքմենական ԽՍՀ | 444 | Աշխաբադ | 1024 | 245 | 12 |
| Ուզբեկական ԽՍՀ | 370 | Տաշքենդ | 4117 | 1301 | 54 |
| Կարա-Կալպակական ԻԽՍՀ | 198 | Տուրտկուլ | 352 | 22 | 3 |
| Տաջիկական ԽՍՀ | 144 | Ստալինաբադ | 1187 | 146 | 13 |
| Լեռնային Բադախշանի ԻՄ | 61 | Խորոգ | 35 | 1 | |
| Ղազախական ԽՍՀ | 2744 | Ալմա-Աթա | 5626 | 1171 | 67 |
| Կիրգիզական ԽՍՀ | 197 | Ֆրունզե | 1100 | 202 | 13 |

ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ—Աղյուսակի տվյալները վերցված են հետևյալ աղբյուրնե
Ստալին—Խորհրդային Սահմանադրության մասին» գրք
ՑՈՒՆԽՈՒ-ի «ԽՍՀՄ-ն Սոցիալիզմի երկիր» վիճակագր

1553

Գերմանացիներ - 66,4, Ռուսներ—29,4
Օսեթիներ – 84,2, Ուկրայնացիներ – 6,8, Ռուսներ—6,6
Ուդմուրտներ—52,3, Ռուսներ—43,3

Չուվաշներ—80, Ռուսներ—15,8
Յակուտներ - 81,6, Ռուսներ—10,4

Չերկեսներ—47,8, Ռուսներ—25,6, Ուկրայնացիներ - 23,3

Կարաչայներ—83,3, Ուկրայնացիներ—4,4
Ռուսներ - 52, Ալտեր և Օյրոթներ—37,2, Տելենգետներ—3,4
Խակասներ—51,7, Ռուսներ 48,3
Կաբարդի.—33,3, Բեսկես.-Աբազ.—29,7, Նոգայն.—16,8, Չերկես.—7,2
Ուկրայնացիներ - 80, Ռուսներ—9,2, Հրեաներ—5,4
Մոլդավներ—30,1, Ուկրայնացիներ - 44,5, Ռուսներ—8,5
Բելոռուսներ—80,6, Հրեաներ—8,2, Ռուսներ—7,2
Ադրբեջանի թուրքեր—63,3, Հայեր—12,4, Ռուսներ—9,7
Թուրքեր -84,5, Հայեր—10,8
Հայեր—89,1, Թուրքեր—10
Վրացիներ—67,7, Հայեր—11,6, Թուրքեր—5,2
Աբխազներ—27,8, Վրացիներ—33,5, Հայեր—12,8
Վրացիներ—68,2, այդ թվում Աջարացին.—53,7, Հայեր—7,9, Ռուս. 7,7
Օսեր—69,1, Վրացիներ—26,9
Հայեր—84,7, Թուրքեր—8,2
Թյուրքմեններ—72,0, Ուզբեկներ—10,5, Ռուսներ—7,5
Ուզբեկներ—76,0, Ռուսներ—5,6
Կարակալպակներ—39,1, Ղազախներ—27,0, Ուզբեկներ—26,4
Տաջիկներ—78,4, Ուզբեկներ—17,9

Ղազախներ—57,1, Ռուսներ—19,7, Ուկրայնացիներ—13,2
Կիրգիզներ 66,6, Ռուսներ—11,7, Ուզբեկներ—11,0

...,—Կոնսորոն, Հանրապետությունն և Մարզերը «Վ. Ի. Լենին և Ի. Վ...
...հունվար 1936 թ., աղյուսակի ոացած մատերիալները վերցված են
...ն ժողովածուից, 1936 թ.։

«Վ՛պոմոշ պարտինոյե ուչեբե» № 34—35, 1936 թիվ։

Համառոտ տեղեկություն ԽՍՀՄ Միութենական Հանրապետությու[illegible]

Մարզերի [illegible]

| ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ԻՆՔՆԱՎԱՐ ՄԱՐԶԵՐ | Տարածություն (հազար քառ. կիլոմետրերով) | ԿԵՆՏՐՈՆ | Բնակչություն (… զարն.) 1/I-193[illegible] Գյուղա-կան | Քաղա-քային | |
|---|---|---|---|---|---|
| ԽՍՀՄ | 21154 | Մոսկվա | 12544[illegible] | 40303 | 16[illegible] |
| ՌՍՖՍՀ | 16499 | Մոսկվա | 7802[illegible] | 27151 | 10[illegible] |
| **Ինքնավար հանրապետություններ** | | | | | |
| Թաթարական ԻԽՍՀ | 67 | Կազան | 241[illegible] | 375 | |
| Բաշկիրական ԻԽՍՀ | 141 | Ուֆա | 258[illegible] | 310 | |
| Դաղստանի ԻԽՍՀ | 58 | Մախաչ-Կալա | 79[illegible] | 150 | |
| Բուրյաթ-Մոնղոլական ԻԽՍՀ | 368 | Ուլան-Ուդե | 55[illegible] | 71 | |
| Կաբարդինո-Բալկարյան ԻԽՍՀ | 13 | Նալչիկ | 247 | 32 | |
| Կալմիկական ԻԽՍՀ | 74 | Էլիստա | 17[illegible] | 12 | |
| Կարելիայի ԻԽՍՀ | 147 | Պետրոզավոդսկ | 261 | 111 | |
| Կոմիի ԻԽՍՀ | 375 | Սիկտիվկար | 256 | 20 | |
| [illegible] | 26 | [illegible] | 411 | 380 | |

# ԽՍՀՄ
## ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱԳՈՒՅՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ ՅԵՎ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԸ





ՄՈԼԴԱՎԱԿԱՆ ԻԽՍՀ
ԱԶՈՎ-ՍԵՎ-ԾՈՎՅԱՆ ԵՐԿՐԱՄ.
ՀԵՌԱՎՈՐ ԱՐԵՎԵԼՅԱՆ ԵՐԿՐԱՄԱՍ
ԱՐԵՎՄՏՅԱՆ ՍԻԲԻՐԻ ԵՐԿՐԱՄԱՍ
ԿՐԱՍՆՈ-ՅԱՐՍԿԻ ԵՐԿՐԱՄ.
ՀՅՈՒՍԻ-ՍԱՅԻՆ ԿՈՎ. ԵՐԿՐԱՄ.
ՎՈՐՈՆԵ-ԺԻ ՄԱՐԶ
ԱՐԵՎԵԼ. ՍԻԲԻՐԻ ՄԱՐԶ
ԳՈՐԿՈՒ ՄԱՐԶ
ԱՐԵՎՄՏ-ՅԱՆ ՄԱՐԶ
ԻՎԱՆՈ-ՎՈՅԻ ՄԱՐԶ
ԿԱԼԻՆԻ-ՆԻ ՄԱՐԶ
ԿԻՐՈՎԻ ՄԱՐԶ
ԿՈՒՅԲԻ-ՇԵՎԻ ՄԱՐԶ
ԿՈՒՐՍ-ԿԻ ՄԱՐԶ
ԼԵՆԻՆԳՐԱԴԻ ՄԱՐԶ
ՄՈՍԿՎԱ-ՅԻ ՄԱՐԶ
ՕՄՍԿԻ ՄԱՐԶ
ՕՐԵՆԲՈՒՐԳԻ ՄԱՐԶ
ՍԱՐԱՏՈ-ՎԻ ՄԱՐԶ
ՍՎԵՐԴԼՈ-ՎՍԿԻ ՄԱՐԶ
ՀՅՈՒՍԻ-ՍԱՅԻՆ ՄԱՐԶ
ՍՏԱԼԻՆ-ԳՐԱԴԻ ՄԱՐԶ
ՉԵԼՅԱԲԻ-ՆՍԿԻ ՄԱՐԶ
ՅԱՐՈՍԼ. ԼԱՎԼԻ ՄԱՐԶ
ԹԱԹԱՐԱԿԱՆ ԻԽՍՀ
ԲԱՇԿԻՐԱԿԱՆ ԻԽՍՀ
ԴԱՂՍՏԱՆԻ ԻԽՍՀ
ԲՈՒՐՅԱԹ-ՄՈՆՂ. ԻԽՍՀ.
ԿԱԲԱՐԴԻՆՈ-ԲԱԼԿԱՐՅԱՆ ԻԽՍՀ
ԿԱԼՄԻԿՅԱՆ ԻԽՍՀ
ԿԱՐԵԼՅԱՆ ԻԽՍՀ
ԿՈՄԻ ԻԽՍՀ
ՂՐԻՄԻ ԻԽՍՀ
ՄԱՐԻՅԱՆ ԻԽՍՀ
ՄՈՐԴՎԱՅԻ ԻԽՍՀ
ՄԵՐՁՎՈԼԳՅԱՆ ԳԵՐՄԱՆ. ԻԽՍՀ
ՀՅՈՒՍ. ՕՍԵԹ. ԻԽՍՀ
ՈՒԴՄՈՒՐՏՅԱՆ ԻԽՍՀ
ՉԵՉԵՆՈ-ԻՆԳ. ԻԽՍՀ
ՉՈՒՎԱՇՅԱՆ ԻԽՍՀ
ՅԱԿՈՒՏՅԱՆ ԻԽՍՀ
ԱԴԻԳԵՅԻ Ի. Մ.
ՀՐԵԱԿԱՆ Ի. Մ
ԿԱՐԱՉԱՅԻ Ի. Մ
ՕՅՐՈԹՅԱՆ Ի. Մ.
ԽԱԿԱՍՅԱՆ Ի. Մ
ՉԵՐՔԵԶ-ՅԱՆ Ի. Մ

# ԽՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԸ






ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն - «Խորհրդ. Հայաստան»

Բացված է 1937 թ. բաժանորդագրություն

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . 6 ռուբ.
6 » . . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝

„Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին.